ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ

ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻՆ ՀԱՅՈՑ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ

# ՎԱՐՉԱԿԱՆ ՀՐԱՀԱՆԳ ՎԻՃԱԿԻՆ ԵԳԻՊՏՈՍԻ

ՍԱՀՄԱՆԵԱԼ ԱԶԳ. ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ՊԱՏԿ. ԽԱՌՆ ԺՈՂՈՎԷՆ

ՏՊԱՐԱՆ «ՐԱՑՑԻ»

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

(ԵԳԻՊՏՈՍ)

1907

Varchakan hrahang vichakin...

ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ

ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻՆ ՀԱՅՈՑ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ

# ՎԱՐՉԱԿԱՆ ՀՐԱՀԱՆԳ ՎԻՃԱԿԻՆ ԵԳԻՊՏՈՍԻ

ՍԱՀՄԱՆԵԱԼ ԱԶԳ. ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ՊԱՏԿ. ԽԱՌՆ ԺՈՂՈՎԷՆ

ՏՊԱՐԱՆ «ԲԱՑՑԻ»

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

(ԵԳԻՊՏՈՍ)

1907

ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ ՀԱՅՈՑ

Աղեքսանդրիա

15 Յուլիս 1907

ԸՆՏՐՈՂԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Թիւ 1

## ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ազգ. Կեդր. Վարչութեան Պատկ. Խառն Ժողովոյ հրահանգաց համաձայն՝ Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովի ընտրութիւնը կատարելու պաշտօնով ըստ օրինի կազմուած Ընտրողական Ժողովս, իւր առաջին նիստին մէջ իսկ՝ միաձայնութեամբ պատշաճ դատեց՝ իբր ընտրողական նախապատրաստութեանց առաջին քայլը՝ ծանօթացնել Աղեքսանդրիոյ արգոյ հայ հասարակութեան այն կանոնները և օրինական տրամադրութիւնները որոնց համաձայն տեղի պիտի ունենան այսուհետև մեր թեմին վարչական և ընտրական բոլոր գործողութիւնները, և որոնց շնորհիւ Եգիպտոսի ամբողջ առաջնորդական վիճակը կօժտուի վերջապէս առանձնայատուկ միաձոյլ կազմակերպութեամբ մը՝ հիմնուած Ազգային Սահմանադրութեան ընդհանուր սկզբանց վրայ և պատշաճեցուած տեղական հանգամանքներուն:

Առ այս Ժողովս կը փութայ ի լոյս ընծայել Ազգ. Կեդր. Վարչութեան Պատկ. Խառն Ժողովէն մեր վիճակին համար սահմանուած ՎԱՐՉԱԿԱՆ ՀՐԱՀԱՆԳԸ՝ անոր սկիզբը դնելով նաև Ա. Բ.

և Գ. երեք յարակից վաւերաթղթեր որոնք, բաց ի իրենց պարունակած կարևոր մեկնութիւններէն և կարգադրութիւններէն՝ ինքնին այս վարչական վերակազմութեան օգտաշատ գործին հիմնաքարը և պատմական յիշատակարանը կը կազմեն:

Հիմա որ Աղեքսանդրիոյ Հայ Հասարակութիւնը՝ կեդր. վարչութենէն պատրաստուած և գործադրութեան հրամայուած այս վարչական Հրահանգին մէջ կը գտնէ այլևս պսակումը իր այնքան տարիներով միահամուռ արտայայտած բաղձանքներուն, փաստ է որ՝ անխառն բերկրութեամբ պիտի ողջունէ զայն, և ամէն ոք իր կարգին կատարեալ օրինապահութեամբ, խոհեմութեամբ և համերաշխութեամբ պիտի ջանայ դիւրացնել շուտով իրականացումը այս ազգօգուտ գործին, որ արդարև բարգաւաճումի և միաբանութեան նոր թուական մը կը խոստանայ բանալ Եգիպտոսի Հայ գաղութին համար:

Առաջնորդ Եգիպտոսի
Նախագահ Ընտրող. Ժողովոյ
ՄԿՐՏԻՉ Ծ. ՎՐԴ. ԱՂԱՒՆՈՒՆԻ

# Ա.

## ԱԶԳ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՊԱՇՏՕՆԱԳԻՐԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՎԱՐՉԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

**ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ ՀԱՅՈՑ**
**Կ. ՊՈԼԻՍ**

5 *Մայիս* 1907

*ԽԱՌՆ ԺՈՂՈՎ*

*Ազգ. Կեդր. Վարչութեան*

*Համար* 97

*Գերաշնորհ Տ. Մկրտիչ Ծ. Վրդ. Աղաւնունի*
*Առաջնորդ Վիճակին*
*Եգիպտոսի*

*Եգիպտոսի ազգային գործերը տեղական հանգամանաց համաձայն օրինաւոր ուղղութեան մէջ դնելու և ըստ այնմ Գաւառական Վարչութիւնն կազմակերպելու համար շատոնց ի վեր զգալի եղած էր Սահմանադրական յատուկ Հրահանգի մը պէտքը, որ հիմնուած լինելով հանդերձ Սահմանադրութեան ոգւոյն և սկզբանց վրայ, կարենար միանգամայն պատշաճիլ Եգիպտոսի վիճակին բացառիկ դրից և գոհացում տալ անոր պէտքերուն:*

*Այս վերջին ժամանակներս Աղեքսանդրիոյ մէջ ծագած թեմական զանազան խնդիրներն և տեղի ունեցած իրողութիւններն աւելի անհրաժեշտ հարկ մը յառաջ բերին վարչական կազմակերպութեան գործն ի գլուխ հանելու, և Ազգ. Կեդրոնական Վարչութիւնն*

յանձնած լինելով Բարձր. Պօղոս Նուպար փաշայի ուսումնասիրել իրաց վիճակն և պէտք եղած ծրագիրն պատրաստել, Խառն Ժողովն Նորին Բարձրութեան կողմէ մատուցուած ծրագիրն նկատողութեան առաւ, և անոր սահմանած սկզբունքներն օրինաւոր և ընդունելի գտնելով, ընդունեց ծրագիրն, և հետևաբար ծրագրին սկզբանց վրայ՝ սահմանեց Վարչական Հրահանգ մը Եգիպտոսի վիճակին համար, գործադրութեան հսկողութիւնը յանձնելով դարձեալ Նորին Բարձրութեան խնամոց և հոգածութեան:

Ահաւասիկ նոյն Վարչական Հրահանգն ներփակեալ կուղարկենք Ձեր Գերապատուութեան և կը յանձնարարենք որ Ն. Բարձրութեան հետ բանակցութեամբ և անոր խորհրդոց համաձայն ձեռնարկէք նոյն Հրահանգով սահմանուած վարչական մարմինները կազմակերպելու իրենց բոլոր ճիւղերով, ստանալով թէ Գահիրէի Քաղաքական Ժողովին և թէ Աղեքսանդրիոյ Թաղական Խորհրդին գործակցութիւնն, և վիճակային գործերը դնելով այն վարչական ուղղութեան մէջ զոր Հրահանգը կը տրամադրէ, փութաք տեղեկագրել մեզ կատարուած ընտրութիւնները՝ ըստ օրինի հաստատուելու համար:

Հարկ չէ ըսել թէ այս մօտօք գրուած է կարևորը նաև Բարձր. Պօղոս Փաշայի և Աղեքսանդրիոյ Ատենապետ Վսեմ. Աբրահամ Բարթող Փաշայի, որոց հաղորդուած է նաև մի մի օրինակ Հրահանգէն:

Մնամք աղօթարար
Պատրիարք Կ. Պոլսոյ
(Ստոր.) ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔ.

## Բ.

## ԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

Ուրբաթ, 7 Յունիս 1907

Ընդ նախագահութեամբ Գեր. Տ. Մկրտիչ Ծ. վարդապետ Աղաւնունիի, Առաջնորդ Եգիպտոսի, և Ատենապետութեամբ վսեմ. Պօղոս փաշա Նուպարի, գումարուեցաւ Աղեքսանդրիոյ ազգայիններու ժողով մը որուն ներկայ էին.

վսեմ. Միհրան խան Գալֆաեան
Արթին Պէյ Բէլիզեան
Միքայէլ Պէյ Բէլիզեան
Աստուր Պէյ Շէրիմեան
Ազն. Տ. Գէորգ Սարգիսեան
Տօքթ. Ժամկոչեան
Յակոբ Իզմիրլեան
Գէորգ Իփէքեան
Տիգրան Կամսարական
Միքայէլ Կիւրճեան
Գէորգ Մէրամէթճեան
Գառնիկ Չպուքճեան
Միհրան Տամատեան
Պերճ Օհանեան
և Յարութիւն Մանուկեան։

Իսկ հրաւիրեալներէն գրաւման պատճառաւ բա- ցակայ գտնուած են. վսեմ. Աբրահամ փաշա Բարթող և Տեարք Անտոն Արթինօֆ, Սահակ Աբրահամեան, Վահան

Խորասանճեան, Արմենա՛ Կամսարական, Կարապետ Մել-քոնեան, Լեոն Մկրտիչեան, Յարութիւն Մորուքեան, Յովհաննէս Շնորհքեան, Լեոն Պէրպէրեան, Արամ Արշակեան, Տոքթ. Թէօֆիլ, Յակոբ Ուզուրեան և Լեոն Նիզամեան։

Առաջնորդ Հայրը առեանը բացուած հռչակեց ժամը 11 ին և յայտարարեց թէ Կ. Պոլսոյ Ամեն. Սրբազան Պատրիարք Հօր կողմէ Նորին Վսեմութիւն Պօղոս փաշա Նուպարի ուղղուած պաշտօնագրի մը վրայ, Թելադրութեամբ Նորին Վսեմութեան՝ ժողով հրաւիրած է այսօր Աղեքսանդրիոյ ծանօթ ազգայիններէն իբր 28 անձինք, որոնցմէ ներկաներուն իր շնոր-հակալութիւններն ուղղեց հրաւէրին պատասխանած ըլլալնուն համար։

Ապա խօսք առաւ Վսեմ. Պօղոս Փաշա Նուպար և հետևեալն ուղղեց ներկայ ազգայնոց.

«Տեարք,

«Նորին Ամենապատուութեան Կ. Պոլսոյ Պատրի-
«արքին կողմանէ քանիցս կրկնուած փափաքին համա-
«կերպելով, ընդունեցայ Աղեքսանդրիոյ ազգային գոր-
«ծոց միջամտել, հոն յառաջ եկած դժուարութիւններն
«հարթելու և ձեզ բաժնող երկպառակութիւններուն
«վերջ տալով լուծման մը յանգելու համար։ Յօժարու-
«թեամբ յանձն առի այս պաշտօնը, նա մանաւանդ շատ
«լաւ յիշատակ մը պահած ըլլալուս համար այն տա-
«րիներէն երբ Աղեքսանդրիա կը բնակէի ուր ձեր

«վստահութիւնը վայելած ըլլալով Աղեքսանդրիոյ Ազգ.
«Վարչութեան ատենապետութիւնը ինծ յանձնուած էր:

«Ինչպէս որ արդէն յայտարարած էի ձեզ, վեր-
«ջին ընտրութիւններն՝ ըստ իմ կարծեաց՝ օրինաւորա-
«պէս կատարուած չըլլալով, ոեւէ դիմում չէի կրնար
«փորձել՝ մինչև որ այդ ընտրութիւնները չջնջուէին:
«Աղեքսանդրիոյ ժողովուրդը զայս հասկնալու խմա-
«տութիւնը ունեցաւ, ինչ որ դիւրացուց գոհացուցիչ
«արդիւնք մը ձեռք բերելը, որ այսօր ձեզ պիտի հա-
«ղորդեմ: Արդարև կրցայ Նորին Ամենապատուութեան
«գնահատել տալ ձեր թեմին մասնաւոր դիրքը, որոյ
«անցեալին մէջ վայելած տեսակ մը վարչական ան-
«կախութիւնը մինչև աստիճան մը իրաւունք կուտար
«ապագային համար ալ մասնաւոր կազմակերպութեան մը:

«Ազգ. Կեդրոնական Վարչութեան խառն ժողովը
«նպաստաւոր ընդունելութիւն ընելով դիմումիս և ի
«նկատի առնելով յառաջ բերած փաստերս, հաճեցաւ
«սահմանել հրահանգներ զորս ուրախ եմ ձեզի հաղոր-
«դելու և որոնք ձեր թեմին Նոր կազմակերպութեան
«հիմը պիտի ըլլան:

«Ինչ որ արդէն գոհունակութեամբ հաստատեցի,
«դուք ևս պիտի տեսնէք թէ Կ. Պոլսոյ խառն ժողովը
«այնպիսի կազմակերպութիւն մը կը շնորհէ ձեզ որ
«յուսամ թէ ամենուն գոհացում պիտի տայ և Աղեք-
«սանդրիոյ Հայ հասարակութեան մէջ խաղաղութիւնը
«և միաբանութիւնը պիտի վերահաստատէ:

«Այս Նոր կազմակերպութիւնը Եգիպտոսի առաջ-

«Նորդական վիճակին միութիւնը պահպանելով հանդերձ,
«կատարեալ անկախութիւն և ինքնօրինութիւն կը շնորհէ
«ձեզ, առանց Գահիրէի Թեմին հետ ձեր ունեցած կա-
«պերը խզելու: Արդարև ցաւալի պիտի ըլլար եթէ
«տեսակ մը հերձուած յառաջ գար Եգիպտոսի Հայոց
«մէջ, որոնց բարգաւաճումը և յառաջդիմութիւնը սերտ
«համերաշխութեան և համաձայնութեան պէտք ունի:

«Քաղցր է ինձ յուսալ թէ Աղեքսանդրիոյ հայ
«ժողովուրդին համար միաբանութեան շրջան մը կը
«բացուի ատով և ի խորոց սրտի մաղթանքներ ընելով
«անոր բարգաւաճման համար՝ ահա կը հաղորդեմ ձեզ
«Պատրիարքարանին Հրահանգները»:

Յանձնարարութեամբ Նորին Վսեմութեան, Առաջնորդարանի դիւանապետը կարդաց յօդուած առ յօդուած Կ. Պոլսոյ Ազգ. Կեդր. Վարչութեան խառն ժողովէն ընդունուած և վաւերացուած Եգիպտոսի Թեմին համար գործադրելի Ազգային Վարչական Ծրագիրը:

Սոյն ընթերցման աւարտումէն յետոյ ներկայք իրենց ամենախորին շնորհակալութիւններն յայտնեցին Վսեմ. Պօղոս Փաշա Նուպարի որ բարեհաճութիւնն ունեցած էր միջամտելու Ամեն. Ս. Պատրիարք Հօր մօտ, և խնդրեցին Նորին Վսեմութենէն որպէս զի շնորհ ընէ ներկայ ժողովոյ երախտագիտական խորին զգացմանց թարգմանը հանդիսանալ Նորին Ամենապատուութեան քով:

Վերոյիշեալ հրահանգներուն 9-րդ յօդուածին գալով ժողովը՝ Նորին Վսեմութեան Պօղոս Փաշայի ա-

ռաջարկութեան վրայ, և նոյն յօդուածի մեկնութիւնը Նորին Ամեն. Սրբազնութեան վաւերացմանը ենթարկելով՝ կը նկատէ թէ ընտրողութեան համար յօդուածին առաջին երեք պայմաններն անհրաժեշտ են առ հասարակ բոլոր դասակարգերուն և թէ այդ երեք պայմաններէն զատ՝ ընտրողները պէտք է նաև լրացնեն յաջորդող երեք պայմաններէն մին։

Իսկ 9—րդ յօդուածին այն հատուածը, որուն տրամադրութեամբ ամէն ընտրող պարտի յիսուն ղրուշ ողջ Ազգային տուրք մը վճարել, մինչև ցարդ գործնականին մէջ գոյութիւն չունենալուն, առ այժմ անկարելի պիտի ըլլայ՝ այն պայմանը գոհացնող ընտրողներ գտնալ. ուստի Ժողովը պարտք զգաց դարձեալ Ն. Վ. Գօղոս Փաշայի բարեացակամ միջամտութեանը դիմել որպէս զի գէթ այս առաջին ընտրութեանց համար Պատրիարքարանը գերծ կացուցանէ ընտրողները յիշեալ տուրքի վճարումէն։ Վսեմ. Պօղոս Փաշա Նուպար, Ժողովոյ այս միահամուռ բաղձանքին վրայ յանձն առաւ հեռագրաւ դիմել Ամեն. Ս. Պատրիարք Հօր, խնդրելու համար որ, լոկ այս անգամուան ընտրութեանց համար այդ բացառութիւնը շնորհէ, պայմանաւ որ, յառաջիկային, ընտրութեանց վերաբերեալ ամէն պայմաններ, և ի մասնաւորի յիսուն ղրուշ ողջ գումարի տուրքը՝ կէտ առ կէտ պիտի գործադրուին։

Նոյնպէս Ժողովոյ բաղձանաց վրայ Վսեմ. Պօղոս Փաշա յանձնառու եղաւ առաջին թղթատարով գրել Ազգ. Պատրիարքարանին և խնդրել որ ըստ Հրահանգի

«ամեն դասակարգի ընտրողներէ, իսկ մնացեալ
«երեք պայմաններէն մին միայն պէտք է ունենան:—Նաև

2. «Ըստ որում մինչև ցարդ Աղեքսանդրիոյ մէջ ազ-
«գային տուրքը չէ կրցած հաստատուիլ, և առ այժմ
«անկարելի պիտի լինի գտնել ընտրողներ որ ըստ հրա-
«հանգի տարին 50 ղրշ. ողջ գրամ Ազգ. տուրք վճա-
«րած լինին, ուստի հարկ դատուե՛ր է հրահանգին նշա-
«նակած պայմանը այս առաջին անգամ ի բաց թողուլ
«և յառաջիկային գործադրութեան դնել անվրէպ:—

3. «Հարկ դատուեր է Քաղաքական Ժողովոյ ան-
«դամոց թիւը 5 էն 7՝ի վերածել:

«Այս խնդրոյն նկատմամբ Բարձր. Պօղոս Փաշա
«ևս իր կողմէ կարևորն գրած և առաջարկած լինելով՝
«մեզ՝ Ազգ. Կեդր. Վարչութեան Խառն Ժողովը նկա-
«տողութեան առաւ եղած առաջարկութիւնները, և ճիշդ
«գտաւ հրահանգին 9րդ յօդուածին նկատմամբ տրուած
«մեկնութիւնն և ընդունեց, ինչպէս ընդունեց նաև
«Քաղաք. Ժողովոյ անդամոց թիւը բարձրացնելու ա-
«ռաջարկն, և 5՝էն 7՝ի վերածեց: Իսկ տրոց վճարման
«պայմանին գալով, արդէն Բարձր. Պօղոս Փաշա կան-
«խաւ առաջարկած լինելով մեզ վճարումը պայման
«չդնել այս առաջին ընտրութեան պահուն, սոյն առա-
«ջարկութիւնն ընդունուած և մեր կողմէ հեռագրուած
«էր Նորին Բարձրութեան որ տուրքը վճարելու կա-
«րողութիւնն ու յանձնառութիւնը միայն պայման դրուի
«այս անգամ, ինչ որ Ազգ. Կեդր. Վարչութեան
«Խառն Ժողովն ալ հաստատեց իր համամտութեամբ»:

# ՎԱՐՉԱԿԱՆ ՀՐԱՀԱՆԳ

## ՎԻՃԱԿԻՆ ԵԳԻՊՏՈՍԻ

1.— *Եգիպտոսի մէկ Առաջնորդական վիճակ կը կազմէ կ. Պոլսոյ Հայոց Պատրիարքութեան ներքեւ և մէկ Առաջնորդի մը ձեռօք կը կառավարուի:*

2.— *Եգիպտոսի Առաջնորդութեան կեդրոնը Գահիրէ մայրաքաղաքն է, բայց Աղեքսանդրիա ալ Առաջնորդանիստ կեդրոն է և Առաջնորդը պարտաւոր է փոփոխակի երկու քաղաքներու մէջ բնակիլ պարագայից համեմատ:*

3.— *Երկու քաղաքներէն դուրս գտնուող Եգիպտոսի հայաբնակ տեղերը երկուքէն մէկին հետ կապակցեալ պիտի նկատուին կառավարչական յարաբերութեանց համար բաշխուած:*

4.— *Եգիպտոսի Ազգային վարչութիւնը կազմակերպուած է Ազգ. Սահմանադրութեան ոգւոյն համեմատ, պարբերութեամբ այն կէտերուն որ անպայման պահանջից համաձայն այս հրահանգին մէջ պիտի նշանակուին:*

5. — *Եգիպտոսի Գաւառական Ընդհանուր Ժողովը կը բաղկանայ երեսուն և հինգ ան-*

գամներէ, որոց հինգը եկեղեցական և երեսունը աշխարհական: Աշխարհականները կէս առ կէս, այսինքն տասնըհինգական անդամ Գահիրէի և Աղեքսանդրիոյ երկու թեմերուն կողմէ կ'ընտրուին: Իսկ եկեղեցականներէն երեքը Գահիրէէն և երկուքը Աղեքսանդրիայէն կ'առնուին:

6.— Թէ Գահիրէի և թէ Աղեքսանդրիոյ թեմերը Գաւառական Ժողովոյ յիշեալ տասն և հինգ անդամները կ'ընտրեն իրենց քաղաքին մէջէն: Բայց այս թիւէն մաս պիտի հանեն իրենց թեմին մէջ գտնուող հայաբնակ տեղերուն, այն պարագային մէջ երբ այն տեղերը գոնէ երեսուն ընտրող անձ և մասնաւ մ'ունին:

7.— Ընդհ. Ժողովոյ եկեղեցական անդամներ են երկու քաղաքներուն ծխատէր քահանաներուն երեցագոյնները, բաւական է որ ծերութեամբ անկարացած կամ օրինական պատճառներով զրկուած չըլլան:

8.— Ընդհ. Ժողովոյ աշխարհական անդամները կ'ընտրուին ուղղակի ժողովրդեան քուէարկութեամբ, և սահմանադրական հրահանգին ցուցուցած ձևով:

9.— Գահիրէի և Աղեքսանդրիոյ թեմերուն մէջ ընտրող են հետևեալ պայմաններու պատաս-

խառնող հայ ուղղափառ եկեղեցւոյ զաւակ ազգայիններ, որոնք

Ա. — Իրենց կենաց քսանհինգ տարին լրացուցած են։

Բ. — Տարեկան կէս Օսմ. ոսկի ազգային տուրք կը վճարեն։

Գ. — Սահմանադրութեան 67 րդ. յօդուածով նշանակուած զրկումներէն զերծ են։

Դ. — Եգիպտոսի մէջ ծնած՝ և տեղացի են.

Ե. — Երեք տարիէ ի վեր ընտանիքով Եգիպտոս հաստատուած են.

Զ. — Հինգ տարիէ ի վեր պետական պաշտօնով Եգիպտոս կը բնակին և կամ՝ առետրական տուն հիմնած են։ (1)

10.— Գաւառական Ընդհ. Ժողովը թէ՛ համագումար նիստեր կը գումարէ ի Գահիրէ և թէ իւրաքանչիւր թեմերուն անդամներով թեմական նիստեր կը գումարէ ի Գահիրէ և Աղեքսանդրիա։ Նախագահութիւնը և հրաւիրելու իրաւունքը ամեն առթի մէջ Առաջնորդին կը պատկանի։

11.— Իւրաքանչիւր թեմերուն աշխարհական

(1) Սոյն վեց պայմաններէն առաջին երեքը պահանջելի են առ հասարակ ամէն ընտրողներէ. իսկ այդ երեք պայմաններէն զատ՝ բաւական է լրացնել յաջորդող երեք պայմաններէն մին միայն՝ ընտրողի հանգամանք ունենալու համար։ (Տե՛ս Բ. և Գ. վաւերաթղթերուն մէջ)։

անդամներուն մէջէն կընտրուին մէկ Ատե-
նապետ և մէկ Ատենադպիր: Համագումար
Նիստերու մէջ Ատենապետութիւնը կը վարէ
Գահերէցը և Ատենադպրութիւնը կը վարէ
Աղեքսանդրիայինը: Ատոնց բացակայութեան
փոխադարձաբար կը պաշտօնավարեն միւ-
ները:

12. — Համագումար Նիստերը կը գումարուին
հետևեալ խնդիրներուն համար.

Ա. — Ընտրութիւն Առաջնորդի:

Բ. — Ընտրութիւն գաւառական երեսփոխանի
Կ. Պոլսոյ Կեդրոնական Ընդհ. Ժողովին:

Գ. — Ընտրութիւն պատուիրակի ընտրողական
Ժողովոյ Էջմիածնի, եթէ Պատրիարքարանէ
հրահանգ առնուի:

Դ. — Առաջնորդին հետ տեղի ունեցած ան-
համաձայնութեան կամ Առաջնորդին դէմ
տեղի ունեցած ամբաստանութեան նախա-
քննութեան և Պատրիարքարան տեղեկա-
գրելու համար, կամ Պատրիարքարանի հրա-
հանգին վրայ:

Ե. — Առաջնորդարանի ելմտացոյցի կազմու-
թիւն:

Զ. — Գնում կամ վաճառում Ազգային կալ-
ուածոց:

Է. — Գաւառական Կառավարութեան և Հայ հա-
սարակութեան միջև յարաբերութեանց կէ-

տերու, կամ օրինական փոփոխութիւններու նկատմամբ խորհրդակցութիւններ :

Ը. — Եգիպտոսի տնտեսական գործոց և բարեպաշտական, կրթական և բարեգործական հաստատութեանց մասին կազմուելիք հրահանգներ, և այլ նմանօրինակ խնդիրներ որ Եգիպտոսի Հայ ուղղափառ համայնքութեան ամբողջութեան կը պատկանին :

13.— Ընդհ. Ժողովոյ համագումար նիստերը տեղի կունենան վերոյիշեալ ատեններուն պատահած ատեն: Ամեն ատենի մէջ պէտք է որ իւրաքանչիւր ամսուն գոնէ մէկ նիստ գումարուի, և երկու թեմերուն գործերուն վրայ տեղեկութիւններ տրուին և խորհրդակցութիւններ կատարուին:

14.— Գահիրէի և Աղեքսանդրիոյ թեմական նիստերը կը գումարուին հետևեալ խնդիրներու համար.

Ա. — Ընտրութիւն հինգ (1) անդամէ բաղկացած Քաղաքական ժողովոյ:

Բ. — Հրաժարական Քաղաքական ժողովոյ:

Գ. — Համարատուութիւն Քաղաքական ժողովոյ:

Դ. — Անբաւականութիւն կամ գանգատ Քաղաքական ժողովոյ դէմ:

---

(1) Աղեքսանդրիոյ համար՝ Քաղաք. Ժողովոյ անդամոց թիւը բարձրացուած է եօթնի. (Տես Բ. և Գ. վաւերաթղթերուն մէջ).

Ե. — Թեմական ելմտացոյցի հաստատութիւն:
Զ. — Որ և է ծանր խնդիր զոր Քաղաքական ժողովը հարկ կը սեպէ Թեմական ժողովին հանել, կամ՝ երբ Գաւառական Ընդհ. ժողովին տարուելիք խնդիր կուզէ նախաքըննութեան ենթարկել:

15.— Թէ՛ Գաւառական և թէ Քաղաքական ժողովներու ընտրելի են հայ ուղղափառ Եկեղեցւոյ զաւակ ազգայիններ, որք երեսուն տարեկան են, և տարեկան մէկ Օս. Ոսկի ազգային տուրք կը վճարեն, և ընտրութեան համար հրահանգին սահմանած պայմանները ունին և ըստ Սահմանադրութեան ընտրելութեան իրաւունք կը վայելեն: Գաւառական ժողովին Ատենապետները և Ատենադպիրները չեն կրնար Քաղաքական ժողովի անդամ՝ լինել:

16.— Քաղաքական ժողովները կը միացնեն Իրենց վրայ թեմին նկատմամբ Քաղաքական ժողովոյ և քաղաքին նկատմամբ Թաղական խորհրդոյ գործառնութիւնները, և կը կատարեն միանգամայն թեմին վարչութիւնը և քաղաքին հաստատութեանց և կալուածոց մատակարարութիւնը:

17.— Քաղաքական ժողովներ, եթէ հարկ գտնեն, երկու ժամանակ Հոգաբարձութիւններ կըրնան կազմել Եկեղեցւոյ և վարժարանի հա-

մար, խորաքանչիւրը երեքական անդամէ, որք ընտրութեան պայմանները պիտի ունենան ըստ հրահանգի: Քաղաքական ժողովոյ անդամներէն ոմանք կրնան Հոգաբարձութեանց մէջ ալ գտնուիլ: Ժամանակական և վիճակագրական և այլ ահամարի գործերը եկեղեցւոյ Հոգաբարձութեան կը պատկանին:

18.— Հոգաբարձութիւններ պատասխանատու են Քաղաքային ժողովին և Քաղաքական ժողովը պատասխանատու է Թեմական ժողովին:

19. — Առաջնորդը կ'ընտրուի Օսմանեան հպատակ կուսակրօն եկեղեցականներուն մէջէն, ուրիշ գաւառական Առաջնորդաց համար սահմանուած սովորական հրահանգին համաձայն, Պատրիարքարանէ տրուած արտօնութենէ ետքը, և Պատրիարքարանէ տրուած եռանուն բոց ցանկի վրայ:

20.— Առաջնորդական ընտրութիւնը կը վաւերացուի Ազգ. Կեդր. Վարչութեան խառն ժողովէն, և կը հաստատուի Կայսերական հրովարտակով և Պատրիարքական կոնդակով և տեղական իշխանութեանց ուղղուած ընծայական յանձնարարագրով:

21.— Գաւառական կամ Թեմական և վարչական ժողովոց ընտրութիւններն ալ կը վաւերացուին Պատրիարքական կոնդակով: Իսկ

Հոգաբարձութեանց ընտրութիւնը կը վաւե-
րացուի Առաջնորդէն։

22.— Առաջնորդն երկու թեմերուն մէջ ալ կընտրէ մի մի եկեղեցական Առաջնորդական փոխանորդ վարչական ժողովին հաճութեամբ։ Փոխանորդները Առաջնորդին բացակայութեան կը վարեն Առաջնորդական գործերը, իրենց տրուած հրահանգին համեմատ և նշանակուած սահմանին մէջ։

23.— Կրօնական ժողովոյ պատկանելու գործերը Առաջնորդը կը կարգադրէ փոխանորդին և Թեմական ժողովոյն եկեղեցական անդամներուն հետ ժողով գումարելով։ Իսկ եթէ ծանրակշիռ մի խնդրութիւն կամ վերաքըննութեան առիթ պատահի, երկու թեմերուն փոխանորդները և եկեղեցական անդամները ի միասին ժողովի կը գումարէ։ Կրնայ նաև ի հարկին բոլոր Եգիպտոսի եկեղեցականներէն համագումար ժողով գումարել։

24.— Նշանագրութեան և պսակագրութեան հրամանները կը տրուին Առաջնորդէն, որ կրնայ փոխանորդներն ալ արտօնել իր բացակայութեան հրամանի տալու։

25.— Դատաստանական խորհրդոյ վերաբերեալ խնդիրները կը քննուին Քաղաքական Ժողովէն Թեմական Ժողովի Եկեղեցական ան-

դամներուն հետ միասին, Առաջնորդի կամ փոխանորդի նախագահութեամբ:

26.— փոխանորդներ ի բացակայութեան Առաջնորդի կը նախագահեն վարչական ժողովներու:

27.— Առաջնորդի մահուան կամ հրաժարման կամ՝ որ և է պատճառով դադարման ատեն առժամեայ տեղապահը կ'ընտրուի երկու թեմերու վարչական ժողովներուն համախորհուրդ հաճութեամբ, և կը հաստատուի Ազգ. Պատրիարքարանէ:

28.— Առաջնորդի հրաժարականը մինչև որ Ազգ. Կեդր. Վարչութենէ չընդունուի վերջնական և լրացեալ չնկատուիր:

Սոյն հրահանգը կը հաստատենք և կը վաւերացնենք և կը հրամայենք ի գործադրութիւն:

Ի Պատրիարքարանի Կ. Պոլսոյ 2 Մայիս 1907

Պ. Կ. Պոլսոյ

(Ստոր.) ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔ.

Ե. — Թեմական ելմտացոյցի հաստատութիւն։

Զ. — Որ և է ծանր խնդիր զոր Քաղաքական Ժողովը հարկ կը սեպէ Թեմական Ժողովին հանել, կամ իբր Գաւառական Ընդհ. Ժողովին առաջարկելիք խնդիր կուզէ նախաքննութեան ենթարկել։

15.— Թէ՛ Գաւառական և թէ Քաղաքական Ժողովներու ընտրելի են հայ ուղղափառ Եկեղեցւոյ զաւակ ազգայիններ, որք երեսուն տարեկան են, և տարեկան մէկ Եգ. Ոսկի ազգային տուրք կը վճարեն, և ընտրողութեան համար հրահանգին սահմանած պայմանները ունին և ըստ Սահմանադրութեան ընտրելութեան իրաւունք կը վայելեն։ Գաւառական Ժողովին Ատենապետները և Ատենադպիրները չեն կրնար Քաղաքական Ժողովի անդամ ըլլալ։

16. — Քաղաքական Ժողովները կը միացնեն իրենց վրայ թեմին նկատմամբ Քաղաքական Ժողովոյ և քաղաքին նկատմամբ Թաղական Խորհրդոյ գործառնութիւնները, և կը կատարեն միանգամայն թեմին վարչութիւնը և քաղաքին հաստատութեանց և կալուածոց մատակարարութիւնը։

17.— Քաղաքական Ժողովներ, եթէ հարկ դատեն, երկու ժամանակ հոգաբարձութիւններ կրնան կազմել Եկեղեցւոյ և վարժարանի հա-

մար, իւրաքանչիւրը երեքական անդամէ, որք ընտրողութեան պայմանները պիտի ունենան ըստ հրահանգի: Քաղաքական Ժողովոյ անդամներէն ոմանք կրնան Հոգաբարձութեանց մէջ ալ գտնուիլ: Ժառանգական և վիճակագրական և ազգահամարի գործերը Եկեղեցւոյ Հոգաբարձութեան կը պատկանին:

18.— Հոգաբարձութիւններ պատասխանատու են Քաղաքական Ժողովին և Քաղաքական Ժողովը պատասխանատու է Թեմական Ժողովին:

19. — Առաջնորդը կ'ընտրուի Օսմանեան Հայաստանի կուսակրօն եկեղեցականներուն մէջէն, ուրիշ գաւառական Առաջնորդաց համար սահմանուած սովորական հրահանգին համաձայն, Պատրիարքարանէ ստացուած արտօնութենէ ետքը, և Պատրիարքարանէ տրուած եռանուն բաց ցանկի վրայ:

20.— Առաջնորդական ընտրութիւնը կը վաւերացուի Ազգ. Կեդր. Վարչութեան խառն Ժողովէն, և կը հաստատուի Կայսերական հրովարտակով և Պատրիարքական կոնդակով և տեղական իշխանութեանց ուղղուած ընծայական յանձնարարագրով:

21.— Գաւառական կամ Թեմական և վարչական Ժողովոց ընտրութիւններն ալ կը վաւերացուին Պատրիարքական կոնդակով: Իսկ

Հոգաբարձութեանց ընտրութիւնը կը վաւե-րացուի Առաջնորդէն։

22.— Առաջնորդն երկու թեմերուն մէջ ալ կընտրէ մի մի եկեղեցական Առաջնորդական փո-խանորդ վարչական ժողովին հաճութեամբ։ Փոխանորդները Առաջնորդին բացակայու-թեան կը վարեն Առաջնորդական գործերը, իրենց տրուած հրահանգին համեմատ և նշանակուած սահմանին մէջ։

23.— Կրօնական ժողովոյ պատկանեալ գործերը Առաջնորդը կը կարգադրէ փոխանորդին և Թեմական ժողովոյն եկեղեցական անդամ-ներուն հետ ժողով գումարելով։ Իսկ եթէ ծանրակշիռ մի խնդրութիւն կամ վերաքըն-նութեան առիթ պատահի, երկու թեմերուն փոխանորդները և եկեղեցական անդամները ի միասին ժողովի կը գումարէ։ Կրնայ նաև ի հարկին բոլոր Եգիպտոսի եկեղեցական-ներէն համագումար ժողով գումարել։

24.— Նշանագրութեան և պատկագրութեան հրա-մանները կը տրուին Առաջնորդէն, որ կըր-նայ փոխանորդներն ալ արտօնել իւր բա-ցակայութեան հրամանի տալու։

25.— Դատաստանական խորհրդոյ վերաբերեալ խնդիրները կը քննուին Քաղաքական ժո-ղովէն Թեմական Ժողովի Եկեղեցական ան-

դամերուն հետ միասին, Առաջնորդի կամ փոխանորդի նախագահութեամբ։

26.— Փոխանորդներ ի բացակայութեան Առաջնորդի կը նախագահեն վարչական ժողովներու։

27.— Առաջնորդի մահուան կամ հրաժարման կամ՝ որ և է պատճառով դադարման ատեն առժամեայ տեղապահը կ'ընտրուի երկու թեմերու վարչական ժողովներուն համախորհուրդ հաճութեամբ, և կը հաստատուի Ազգ. Պատրիարքարանէ։

28.— Առաջնորդի հրաժարականը մինչև որ Ազգ. Կեդր. Վարչութենէ չընդունուի վերջնական և լրացեալ չնկատուիր։

Սոյն հրահանգը կը հաստատեմք և կը վաւերացնեմք և կը հրամայեմք ի գործադրութիւն։

Ի Պատրիարքարանի Կ. Պոլսոյ 2 Մայիս 1907

Պ. Կ. Պոլսոյ

(Ստոր.) ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔ.